Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

207

№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ՆՈՐԱՆՈՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐՈՎ ԴԵՊԻ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Պատմության գիրկն անցավ իրադարձություններով հարուստ 1955 թվականը: Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի չորրորդ սեսիան, որը քննության առավ մեր երկրի բազմազգ ժողովուրդների համար բացառիկ կարևորություն ունեցող հարցեր: Գերագույն Սովետը հաստատեց մեր երկրի 1956 թվականի պետական բյուջեն՝ եկամուտների գծով 592 միլիարդ 761 միլիոն 156 հազար ռուբլի գումարով և ծախսերի գծով 569 միլիարդ 634 միլիոն 972 հազար ռուբլի գումարով: Սովետական մարդիկ, ինչպես նաև նոր դեմոկրատիայի երկրների և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը նոր բյուջեն համարում են սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հզոր վերելքի, աշխատավորների բա-





րեկեցության հետագա աճի մի նոր, փայլուն արտահայտություն։

Գերագույն Սովետը ջերմորեն հավանություն տվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ա. Բուլգանինի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամ ընկ. Ն. Ս. Խրուշչևի՝ Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան կատարած ուղևորության արդյունքներին։ Այդ ուղևորությունը ոչ միայն նպաստեց մեր և այդ երեք երկրների ժողովուրդների մերձեցմանը, այլև ամրապնդեց խաղաղասեր ուժերի դիրքերը ամբողջ աշխարհում։

Շնորհիվ Կոմունիստական պարտիայի և սովետական իշխանության խաղաղասիրական քաղաքականության, մեր երկրի աշխատավորները անցած 1955 թվականին կարողացան ամբողջ ուժերը լարել հինգերորդ հնգամյակի եզրափակիչ տարին հաջողությամբ ավարտելու համար։ Այդ նշանաբանով էր ծավալվում սոցիալիստական մրցությունը, որը հաղթանակով պսակվեց։ Մեր արդյունաբերության հնգամյա պլանը կատարվեց ժամկետից շուտ՝ չորս տարի չորս ամսում։ Ավելի բարձր տեմպերով էր զարգանում ծանր ինդուստրիան՝ մետալուրգիան,ածխարդյունաբերությունը, նավթ-



արդյունաբերությունը, մեքենաշինությունը, էներգետիկան։ Անցած տարի մեր երկրի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 27 անգամ, ըստ որում արտադրության միջոցների արտադրությունը աճեց 60 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 86 անգամ, մեքենաշինության արտադրանքի արտադրությունը՝ ավելի քան 160 անգամ։

Կենսագործելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումները, վիթխարի հաջողությունների հասան նաև մեր երկրի գյուղատնտեսության աշխատողները։

Շնորհիվ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության անցած 1955 թվականին նոր հաջողությունների հասան նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները։ Միայն 1955 թվականին արդյունաբերության աճը 163 անգամ գերազանցեց 1919 թվականի ամբողջ արդյունաբերության արտադրանքին։ Այդ նշանակում է, որ Սովետական Հայաստանը ամեն օր տալիս է 4,2 անգամ ավելի արտադրանք, քան ամբողջ 1919 թվականին։ Այս տարի արդյունաբերական արտադրանքի

թողարկումը երկու անգամ գերազանցեց 1950 թվականի մակարդակը։

Կենսագործելով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումի որոշումները և լայնորեն ծավալելով ՍՄԿՊ 20-րդ համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը, Հայէլեկտրո, Պոլիվինիլացետատ, Ավտոդողերի գործարանների կոլեկտիվները ժամկետից շուտ կատարեցին իրենց տարվա պլանները։

Կոլտնտեսություններն ու սովխոզները, մեքենա-տրակտորային կայանները մրցություն են ծավալել բարձր բերք ստանալու և անասնապահության մթերատվությունը բարձրացնելու համար։ 1955 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները առաջին անգամ կատարեցին յուրաքանչյուր կովից ստացվելիք կաթի նախատեսված պլանը։ Իսկ Ղուկասյանի, Սևանի, Շահումյանի, Ապարանի, Ախուրյանի, Հոկտեմբերյանի, Գորիսի շրջանները կաթնատվության տարեկան պլանը կատարեցին ժամկետից զգալիորեն շուտ։

Այսպիսի հաջողություններով մեր երկիրը, մեր ռեսպուբլիկան ավարտեցին անցած 1955 թվականը։ Բայց Կոմունիստական պար-



տիան սովորեցնում է մեզ երբեք չհանգըստանալ ձեռք բերած հաջողություններով։ Ինչ խոսք, որ արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառներում մեր հաջողությունները ավելի մեծ կլինեն, եթե առաջավոր գործարանների ու կոլտնտեսությունների, ֆաբրիկաների ու սովխոզների փորձը, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները արմատավորվեն ամենուրեք, արմատավորվեն հաստատակամորեն։

Վեցերորդ հնգամյակի առաջին տարին՝ 1956 թվականը սկսվեց ՍՄԿՊ 20-րդ համագումարի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների գերազանց կատարմամբ։ Երևանի Մուլիտի գործարանը, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան, Լենինականի շոգեքարշային դեպոն, Ղափանի № 7—10, «Փոքր», Կոմերիտմիության անվան հանքերը, Գլխավոր հանքուղին և արտադրական շատ ձեռնարկություններ նոր տարվա առաջին օրերը նշանավորեցին արտադրական հաջողություններով։ Բայց ոչ բոլոր արտադրական ձեռնարկությունները տարին հաջող սկսեցին։ Երևանի պահեստամասերի, էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանները, բրդյա նուրբ գործ-

վածքեղենի կոմբինատը, Շամլուղի հանքերը անբավարար են աշխատում հունվարի առաջին օրերին։

Այդ ձեռնարկությունների աշխատողները չպետք է մոռանան, որ այս տարի երկիրն ավելի շատ արտադրանք է սպասում իրենցից։ Այդ պահանջը կատարելու համար անհրաժեշտ է ապահովել բոլոր ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, անհրաժեշտ է լրիվին կատարել ի պատիվ պարտիայի 20-րդ համագումարի ծավալված սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

Ագիտատոր, դուք շատ բան կարող եք անել սոցիալիստական մրցությունն ավելի լայնորեն ծավալելու համար։ Դուք կարող եք, օրինակ, ունկնդիրներին պատմել Երևանի Ավտոդողերի գործարանի հաջողությունների մասին, փաստեր, օրինակներ բերել թե ինչպես նորագույն տեխնիկայի և առաջավոր բանվորների հարուստ փորձի արմատավորման շնորհիվ այդ գործարանը տարեցտարի բարձրացնում է իր տեխնիկա-տնտեսական ցուցանիշները՝ տնտեսում է հումք, էլեկտրաէներգիա, բարելավում է արտադրանքի որակը։

Գյուղական ագիտատոր, հիշեցեք, որ մեր



պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության հիմնական խնդիրն է լավագույն կերպով նախապատրաստվել այս տարվա գարնանացանին։ Դուք, ընկեր ագիտատոր, կարող եք բոլոր կոլտնտեսականներին պատմել, օրինակ, Բասարգեչարի շրջանի Ղարաիման գյուղի կոլտնտեսության լավ գործերի մասին, այն, թե ինչպես կենսագործելով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումները, կոլտնտեսությունը 1955 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացավ 19 ցենտներ հացահատիկ և յուրաքանչյուր կովից՝ 1.350 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսականների ազնիվ, համերաշխ աշխատանքը բարձրացրեց, ամրացրեց կոլտնտեսությունը, իսկ իրենք, կոլտնտեսականները յուրաքանչյուր աշխօրին ստացան 10 կիլոգրամ հացահատիկ և 19 ռուբլի դրամ։

Ագիտատորների խնդիրն է բացատրել բոլորին, որ այսպիսի բարձր ցուցանիշների կարող են հասնել բոլոր կոլտնտեսությունները։ Դրա համար պարտիան և կառավարությունը ստեղծել են բոլոր հնարավորությունները։ Զրույցների ընթացքում անպայման փաստեր ու օրինակներ բերեցեք ձեր կոլտնտեսություններից։ Չէ՞ որ յուրաքանչյուր

կոլտնտեսության մեջ էլ քիչ առաջավորներ չկան, որոնց օրինակը շատ ուսանելի է մյուսների համար։

Ահա, օրինակ, Ախտայի շրջանի Սոլակ գյուղի կոլտնտեսությունը, որը համարվում է առաջավոր։ Ճիշտ է, այդ կոլտնտեսությունը առաջավոր է, բայց այն ցուցանիշները, որ ձեռք են բերվել այնտեղ, այն չեն, ինչ կարելի էր ձեռք բերել։ Սոլակի ագիտատորները ինչո՞ւ չեն պատմում կոլտնտեսականներին, թե կոլտնտեսությունը ինչքան շատ հաց, միս, կաթ և այլ մթերքներ կստանար, եթե բոլոր կոլտնտեսականները կատարեին աշխօրերի նույնիսկ մինիմումը։

Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի քսաներորդ համագումարը նորանոր հաջողություններով դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության յուրաքանչյուր օրը պետք է նշանավորել բարձր ցուցանիշներով։ Դրան կարելի է հասնել այն դեպքում, եթե կատարվեն մրցությամբ ստանձնված պարտավորությունները, եթե առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավոր մասնագետների փորձը արմատավորվի ամենուրեք, դառնա բոլորի սեփականությունը։

---



# ՇՈԳԵՔԱՐՇԵՐԻ ԱՆԽԱՓԱՆ ԵՎ ԵԿԱՄՏԱԲԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Մ. ՄԱԼԽԱՍՅԱՆ
Սանահինի կայարանի շոգեքարշային դեպոյի պետ

Մեր դեպոյի կոլեկտիվը գերազանց ցուցանիշներով փակեց 1955 թվականը։ Շոգեքարշի վազքի հնգամյա պլանը կատարված է նախատեսված ժամկետից 5 ամիս շուտ՝ 1955 թվականի հուլիսի 31-ին, երբ մեր երկրում լայնորեն նշվում էր Երկաթուղայինի համամիութենական օրը։ Բացի այդ, խոշոր աշխատանք է կատարված երկաթուղայինների որակավորումը բարձրացնելու ուղղությամբ։ Նոր տեխնիկային տիրապետելու նպատակով, դեպոյում կազմակերպված են կարճատև դասընթացներ, ուր ընդգրկվել են կոլեկտիվի գրեթե բոլոր անդամները։ Երկաթուղայինների որակավորման աշխատանքի այդ ձևը տալիս է հիանալի արդյունք։ Այսպես, օրինակ, կարճատև դասընթացները

լավագույն ցուցանիշներով վերջացնելուց հետո երրորդ կարգի մեքենավարներ Ս. Մատինյանը, Ա. Բոշյանը, Մ. Սարգսյանը, Ռ. Դավթյանը և շատ ուրիշներ ստացել են երկրորդ կարգի մեքենավարի կոչում։ Նրանցից մի քանիսը այժմ աշխատում են որպես ավագ մեքենավարներ։ Բացի այդ, 30 շոգեքարշայիններ վերապատրաստվելուց և վերաորակավորում ստանալուց հետո արդեն աշխատանքի են անցել էլեկտրաքարշերի վրա։

Բացի վերոհիշյալ դասընթացներից, տեղում կազմակերպել ենք նաև առանձին խմբակներ, որտեղ ուսումնասիրվում է երկաթուղային տրանսպորտի տեխնիկական շահագործման կանոնագիրքը։ Իրենց առաջավոր փորձը մասսայականացնելու նպատակով այդ խմբակներում հանդես են եկել մեր բաժանմունքի անվանի մեքենավարները՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Ս. Մատնիշյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գ. Աբաջյանը և ուրիշները։

Մեր դեպոյի եկամտաբերության հիմնական աղբյուրները գոյանում են լավ խնամքի հետևանքով լոկոմոտիվների գերերկար շահագործումից, վառելիքի, պահեստային մա-



սերի և մյուս օժանդակ նյութերի տնտեսումից։ Այդ ուղղությամբ մեծ նշանակություն ունեցավ դեպոյի առաջավոր մեքենավարների աշխատանքի դրական փորձը։ Այսպես, օրինակ, լոկոմոտիվների նորոգումից-նորոգում ընկած ժամանակաշրջանը երկարացնելու գործում մեքենավարներ Հ. Մալխասյանը, Ա. Բոշյանը, Գ. Պետրոսյանը, Մ. Սարգըսյանը և Վ. Սոսյանը հասան ռեկորդային ցուցանիշների։ Նրանք պլանով նախատեսված 55 հազար կիլոմետր վազքի փոխարեն արդեն կատարել են 130 հազարից մինչև 156 հազար կիլոմետր վազք և դրա շնորհիվ ու պահեստային մասերի տնտեսման հաշվին խնայողություն հասցրել են մոտ կես միլիոն ռուբլու։

Ինչպե՞ս նրանք հասան վազքի այդպիսի բարձր ցուցանիշների։ Նրանք դրան հասան աշխատանքի առաջավոր մեթոդների կիրառման և լոկոմոտիվները բարեխղճորեն ու արդյունավետ օգտագործելու շնորհիվ, որը միաժամանակ հնարավորություն ընձեռեց ապահովելու մեքենաների լավ վիճակը և անխափան աշխատանքը։

Որպեսզի ընթացքի ժամանակ շոգեքարշերի կամ էլեկտրաքարշերի առանձին մասեր, հատկապես կալանդաները (բանդաժ) շուտ

չմաշվեն, առաջավոր մեքենավարները նախօրոք զբաղվեցին տեղապտույտ առաջացնող պատճառները վերացնելու հարցով։ Այդ նպատակով նրանք հերթական նորոգումների ժամանակ մեքենայի ծանրությունը համաչափ կերպով բաշխեցին անվազույգերի վրա։ Սակայն անվազույգերի վրա ծանրության համաչափ բաշխումը ոչ միշտ կարող է կանխել անիվների տեղապտույտը։ Անիվները երբեմն տեղապտույտ են տալիս նաև այն ժամանակ, երբ ռելսերը ձյունակալված են լինում, ցեխոտված և կամ՝ յուղոտված։ Այդ երևույթի դեմ պայքարելու նպատակով վերոհիշյալ մեքենավարները անիվների մոտ գտնվող ավազախողովակները ամրացրին այնպես, որ նրանք գտնվեն ռելսագլխիկի ճիշտ վերևում, որպեսզի անհրաժեշտության դեպքում ավազախողովակներից եկող ավազը թափվի ուղիղ անիվի տակ՝ անիվի և ռելսի շփումը է՛լ ավելի ուժեղացնելու նպատակով։

Լոկոմոտիվների երկարակեցությունը ապահովելու համար կարևոր պայման է հանդիսանում նաև շոգեկաթսայի խնամքի ճիշտ կազմակերպումը։ Լավ վիճակում պահպանված շոգեկաթսան իր հետ բերում է նաև վառելիքի զգալի խնայողություն։ Այդ հանգա-



մանքը հաշվի առնելով, մեքենավարներ Ա. Ղալամքարյանը, Լ. Ղազախեցյանը հերթական լվացման և նորոգման ժամանակ, որը կատարվում է ամիսը մեկ անգամ, հետևում են, որ շոգեկաթսայի տաքացման մակերեսը զերծ լինի ջրի գոլորշիներից առաջացող նստվածքից։ Իսկ մինչև հիմնական լվացման ու նորոգման անցնելը, նրանք նստվածքը կաթսայից մաքրում են օդահարման միջոցով։ Այդ միջոցառումների շնորհիվ մեքենավարներից յուրաքանչյուրը խնայել է 10—12 տոննա վառելիք։ Առաջավորների օրինակով են աշխատում նաև մեքենավարներ Ռ. Դավթյանը, Ս. Բեջանյանը և Գ. Մատինյանը, որոնցից յուրաքանչյուրը անցած տարվա 10 ամսում տվել են 8—10 տոննա վառելիքի խնայողություն։

Նյութերի և պահեստամասերի խնայողության գործում մեծ աշխատանք է կատարել նաև շոգեքարշայինների 13 հոգուց բաղկացած բրիգադան։ Այդ բրիգադայի համառ աշխատանքի շնորհիվ անցած չորս և կես տարվա ընթացքում տնտեսվել են մեծ քանակությամբ գործածությունից հանված պղնձյա և պողպատյա մասեր, որոնք հենց այդ նույն բրիգադայի կողմից մշակվելուց և վերանորոգվելուց հետո կրկին դրվել են օգ-

տագործման մեջ։ Հնգամյակի ընթացքում այդ բրիգադայի կողմից պետությանը տված օգուտը հասնում է 200 հազար ռուբլու։

Աշխատանքի առաջավոր մեթոդները տարածելու և փորձի փոխանակում կազմակերպելու ուղղությամբ հատկապես լավ են աշխատում մեր մեքենավար-հրահանգիչները, որոնք միաժամանակ հանդիսանում են ագիտատորներ։ Ընկ. ընկ. Վ. Օհանյանը, Գ. Դավթյանը, Մ. Մարկովը և մյուսները լայնորեն օգտագործում են Սովետական Միության երկաթուղային տրանսպորտի լավագույն մեքենավարների առաջավոր փորձը։ Այսպես, օրինակ, արդեն արմատավորվել է լոկոմոտիվների անվազույգերի և լոկոմոտիվների առանձին մասերի ծառայության ժամանակը երկարացնելու և գնացքների խնամքը լավագույն ձևով կազմակերպելու նրանց աշխատանքի փորձը։

Պարտիայի 20-րդ համագումարը աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու նպատակով մեր կոլեկտիվն ստանձնել է լրացուցիչ պարտավորություններ՝ յուրաքանչյուր ամիս պլանից դուրս երկրին տալ 40—60 հազար ռուբլու դրամական եկամուտ, 15—20 տոննա վառելիքի խնայողություն և լրիվ ապահովել երկաթուղու անվթար երթևեկությունը։

---

ԱԳԻՏԱՏՈՐՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՀՊԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

Սոցիալիստական սեփականությունը մեր Հայրենիքի հարստության և հզորության աղբյուրն է, բոլոր աշխատավորների ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուրը։ Այդ նկատի ունենալով Լենինականի տեքստիլ կոմբինատի Մանվածքային ֆաբրիկայի գզողտեսակավորող ցեխի ագիտատոր Հ. Խաչատրյանը ունկնդիրների հետ հաճախակի զրույց է ունենում սոցիալիստական սեփականությունը պահպանելու մասին։ Վերջերս նա իր հերթական զրույցներից մեկը նվիրեց հենց այդ կարևոր հարցին։ Սկսելով զրույցը, ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը բևեռեց այն հանգամանքի վրա, թե ինչպես պարտիան ու կառավարությունը մեծ կարևորություն են տալիս հանրային, սոցիալիստական սեփականությունը պահպանելու գործին։

ՍՍՌՄ տնտեսական հիմքն են կազմում,— ասաց ագիտատորը,— տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության միջոցների ու գործիքների սոցիալիստական սեփականությունը։ Ուստի ամեն մի ազնիվ քաղաքացի, որը շահագրգռված է սոցիալիստական կարգերի ամրապնդումով, չխնայելով իր ուժերն ու եռանդը, ամեն ինչ անում է այդ կարգերի ամրապնդման համար։ Սովետական մարդու համար չկա ավելի թանկ բան, քան այն, որ է՛լ ավելի հզորանա մեր մեծ Հայրենիքը և արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի բնագավառներում հասնի աննախընթաց նոր հաջողությունների։ Այպա կանգ առնելով կոնկրետ փաստերի վրա, ագիտատորը պատմում է այն մասին, որ իրենց մոտ կան առանձին ընկերներ, որոնք անտարբեր վերաբերմունք ունեն դեպի հանրային գույքը։ Դրանով է բացատրում ագիտատորը այն հանգամանքը, որ իրենց մոտ, առանձին բանվորների խնամքին հանձնված մեքենաներն ու օժանդակ սարքավորումները ժամանակից շուտ են դուրս գալիս շարքից, երբեմն տեղի են ունենում հումքի փչացման կամ կորստի դեպքեր։ Այդ կապակցությամբ ագիտատոր Խաչատրյանը ունկնդիրների առաջ պարսա-





վանքի է ենթարկում գզող ցեխի բանվոր Գ. Հովհաննիսյանին, որը ժամանակին անհրաժեշտ խնամք չի ցուցաբերել իրեն հանձնըված մեքենայի նկատմամբ, այժմ այդ մեքենան աշխատում է խափանումներով։ Վատ է աշխատում նաև գզող ցեխի վարպետի օգնական Զ. Կարապետյանը, որը սարքավորումների վերանորոգումները կատարում է անորակ։

Ավարտելով սոցիալիստական սեփականության պահպանման գործում թերացող առանձին բանվորների նկատմամբ քննադատական դիտողությունները, որոնք գոհունակությամբ էին ընդունվում ունկնդիրների կողմից, ագիտատորը համառոտ կերպով խոսում է յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունների մասին։ Ունկնդիրներին նա հիշեցնում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 131-րդ հոդվածը, որտեղ Սովետական Միության քաղաքացիների հիմնական պարտականությունների մասին ասված է՝ «...պահպանել և ամրացնել հանրային, սոցիալիստական սեփականությունը, որպես սովետական կարգերի սրբազան և անձեռնմխելի հիմք, որպես հայրենիքի հարստության և հզորության աղբյուր, որպես բոլոր աշխա-

տավորների ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուր»։

Անդրադառնալով հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողություն տալու հարցին, ագիտատորը զրույցի ընթացքում նշում է, որ այդ ուղղությամբ իրենց մոտ լուրջ հաջողություններ կան, որ 1955 թվականի ընթացքում ֆաբրիկայում տնտեսվել է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, հումք և վառելանյութ։ Այդ հաջողությունների վերաբերյալ նա բերում է հարուստ փաստական տվյալներ։ Բայց, ցավոք սրտի, շարունակում է ագիտատորը, առանձին աշխատողների անբարեխիղճ ու ոչ սրտացավ վերաբերմունքի պատճառով հաճախ տեղի է ունենում թե հումքի, թե վառելիքի և թե էլեկտրաէներգիայի շռայլում։ Ապա կանգ առնելով իրենց ցեխում տիրող որոշ անհանդուրժելի երևույթների վրա, ագիտատորը նշում է, որ վերջերս ներկմանվերամշակման ցեխի հաշվառ Կ. Կնյազյանը աշխատանքից հեռացվեց և դատի տրվեց այն բանի համար, որ նա ֆաբրիկայից գողացել էր 20 մետր գործվածք։ Անցյալ տարի ֆաբրիկայում մանր գողությունների



16 դեպք է տեղի ունեցել։ Գողությանը, չարաշահումներին և նմանօրինակ այլանդակ երևույթներին վերջ տալու նպատակով ագիտատորը ունկնդիրներին պարզաբանեց, որ անհրաժեշտ է նման հանցագործությունների դեմ կոլեկտիվ ուժերով պայքարել։ Նա միաժամանակ զրույցի մասնակիցներին տեղյակ է պահում այն մասին, որ ամեն մի ոտնձգություն սոցիալիստական սեփականության դեմ պատժվում է օրենքով։ Որովհետև ով հափշտակում է հանրային գույքը, նա դրանով վնաս է հասցնում ամբողջ հասարակությանը, քայքայում սովետական ժողովրդի բարեկեցության հիմքերը։ Այնուհետև ագիտատորը կարդում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի համապատասխան հոդվածը, որ «Հանրային, սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություն անող անձերը ժողովրդի թշնամիներ են»։

Ագիտատորի դիպուկ ու տեղին դիտողությունները՝ առանձին աշխատողների վարքագծի վերաբերյալ, ջերմ պաշտպանության են արժանանում ունկնդիրների շրջանում։ Գզող-մանող ցեխի ենթավարպետ Տ. Խե-

լուշյանը, խոսք վերցնելով, պատմում է այն մասին, թե ինչպես իրենց ցեխի երկրորդ և երրորդ հերթի որոշ աշխատողներ սիստեմատիկաբար տալիս են անորակ արտադրանք։— Այդ երևույթը ես բացատրում եմ այն բանով,— ասում է նա,— որ իմ կողմից հիշատակված ընկերների մոտ չի նկատվում սրտացավ վերաբերմունք դեպի պետական ունեցվածքը։ Նրանք չեն հասկանում, որ խոտան տալով բարձրացնում են արտադրանքի ինքնարժեքը և նյութական մեծ վնաս հասցնում թե իրենց և թե պետությանը։

Զրույցի ընթացքում հանրային սեփականության պաշտպանությամբ, կոնկրետ օրինակներ մեջ բերելով, ելույթներ են ունենում նաև ունկնդիրներից շատերը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը արժանավայել դիմավորելու և 1956 թվականը արտադրական նոր հաջողությունների տարի դարձնելու համար ագիտատորը խորհուրդ է տալիս հետևելու արտադրության այն առաջավորների օրինակին, որոնք խնայելով հումքն ու էլեկտրաէներգիան, ձեռք են բերել



բարձր ցուցանիշներ։ Զրույցի վերջում դիմելով ունկնդիրներին, ագիտատորը հիշեցնում է մեծ Լենինի թևավոր այն խոսքերը, որոնք վերաբերվում են սոցիալիստական սեփականության պահպանմանն ու ամրապնդմանը՝ «Դրամի հաշիվը կանոնավոր և բարեխղճորեն տար, տնտեսությունը խնայողությամբ վարիր, լոդրություն մի անի, մի գողանա, աշխատանքի մեջ պահպանիր խստագույն կարգապահություն»:

---

# ԿՈՈՊԵՐԱՑՄԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՉԻՆԱԿԱՆ ԳՅՈՒՂՈՒՄ

Լ. ԴԵԼՅՈՒՍԻՆ

Չինաստանի կոմունիստական պարտիան վստահորեն չին ժողովրդին առաջնորդում է սոցիալիզմի կառուցման ուղիով։ Անցման շրջանում պարտիայի գլխավոր գիծն այն է, որպեսզի կարճ ժամանակամիջոցում աստիճանաբար կենսագործի երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության, արհեստագործական արդյունաբերության, մասնավոր առևտրի և արդյունաբերության սոցիալիստական վերակառուցումը։

Չինաստանի կոմունիստական պարտիայի գլխավոր գծի մի կարևոր բաղկացուցիչ տարրն է հանդիսանում գյուղատնտեսության արտադրական կոոպերացումը, բազմամիլիոն չին գյուղացիների փոխադրումը կոլեկտիվ աշխատանքի ուղու վրա, սոցիալիզմի ուղու վրա։ Այդ խնդիրն անխզելիորեն կապված է Չինաստանի սոցիալիստական ինդուստրացման խնդրի հետ և լուծվում է նրա հետ միաժամանակ։



Արտադրական կոոպերացման շարժումը, որ ներկայումս ծավալվում է չինական գյուղում, նախապատրաստված է սոցիալ-տընտեսական այն մեծ վերափոխություններով, որոնք կատարվում են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։

Չինաստանում կատարվեց խոշոր կապիտալիստների՝ կոմպրադորների սեփականության ազգայնացում։ Երկրի էկոնոմիկայի բոլոր հրամանատարական բարձունքները՝ ծանր արդյունաբերության հիմնական ձեռնարկությունները, տրանսպորտը, բանկերը, արտաքին առևտուրը և այլն անցան ժողովրդական պետության ձեռքը։ Չինաստանի բազմամիլիոն գյուղացիության բախտի համար հսկայական նշանակություն ունեցան երկրում մի քանի տարի շարունակ տեղի ունեցած և հիմնականում 1953 թվականին ավարտված ագրարային պատմական վերափոխությունները։

Ագրարային այդ ռևոլյուցիան տնկնչացրեց ֆեոդալա-կալվածատիրական սեփականությունը, որ իշխում էր չինական գյուղում դարեր շարունակ։ Կալվածատերերի դասա-

կարգը վերացվեց։ Կալվածատիրական հողերը և արտադրական մյուս միջոցները առանց վարձի հանձնվեցին հողազուրկ և սակավահող գյուղացիներին ի սեփականություն։ Գյուղատնտեսական արտադրության տիրապետող ձևը դարձավ մանր գյուղացիական տնտեսությունը։ Ներկայումս չինական գյուղի հիմնական սոցիալական խմբերն են՝ չքավորները, միջակների (ինչպես նոր, այնպես էլ հին) ստորին խավերը, ունևոր միջակները և կուլակները։

Ագրարային վերափոխությունների շնորհիվ բարելավվեց չինական գյուղացիության հիմնական մասսաների՝ չքավորների և սակավազոր միջակների վիճակը, որոնք ներկայումս կազմում են երկրի բոլոր գյուղացիների մոտ 60—70 տոկոսը։ Սակայն նրանցից շատերի համար կյանքն այնուամենայնիվ դեռևս ծանր է։ Հաճախ նրանց տնտեսություններում պակասում են բանող անասուններ, աշխատանքի գործիքներ, բանվորական ուժ։ Այդպիսի տնտեսությունների որոշ մասը ստիպված է պարտքերի տակ ընկնել, ստացած հողը վարձակալության հանձնել և վաճառել։

Ագրարային վերափոխություններից հետո չինական գյուղում աճեցին կապիտա-



լիզմի տարերային ուժերը, ունևոր գյուղացիներից առաջ եկան նոր կուլակներ։ Ամբողջ երկրի առջև ամբողջ սրությամբ ծառացավ գյուղացիության հետագա զարգացման հարցը, այն հարցը, թե ինչ ուղիով է ընթանալու չինական գյուղը՝ կապիտալիստական թե՞ սոցիալիստական ուղիով։

Չինաստանի կոմունիստական պարտիան աշխատավոր գյուղացիներին ներգրավում է սոցիալիզմի ուղին, կազմակերպում նրանց պայքարը գյուղատնտեսության արտադրական կոոպերացման համար։ Չինական գյուղի սոցիալիստական վերակառուցումը անհրաժեշտ է՝ աշխատավոր գյուղացիության լայն մասսաներին կարիքի ճիրաններից և կուլակային շահագործումից ազատագրելու համար, նրանց ունևոր և կուլտուրական կյանք ապահովելու համար։ Այդ վերակառուցումն անհրաժեշտ է երկրի հետամնաց, մանր արտադրողական, մանր ապրանքային գյուղատնտեսությունը խոշոր, բարձր արտադրողական սոցիալիստական տնտեսություն դարձնելու համար, որն ընդունակ լինի լիովին բավարարելու երկրի կարիքները պարենի և գյուղատնտեսական հումքի ասպարեզում։

Գյուղատնտեսության արտադրական կոոպերացման և երկրի ինդուստրացման խըն-

գլուխների կենսագործումը հնարավորություն կտա հիմնովին ամրապնդել և ավելի զարգացնել ժողովրդական ռևոլյուցիայի նվաճումները, ապահովել սոցիալիզմի կառուցումը Չինաստանում։

## Գյուղն ընթանում է սոցիալիզմի ուղիով

Հենվելով լենինյան կոոպերատիվ պլանի վրա և հաշվի առնելով ՍՍՌՄ կոլտնտեսային շինարարության փորձը, Չինաստանի կոմունիստական պարտիան մշակել և հետևողականորեն կենսագործում է մանր գյուղացիական տնտեսություններից աստիճանաբար խոշոր կոլեկտիվ գյուղատնտեսության անցնելու լայն ծրագիր։ Այդ ծրագիրը լիովին հաշվի է առնում Չինաստանի գյուղատնտեսության առանձնահատկությունները, չինական գյուղի սոցիալ-տնտեսական և քաղաքական կոնկրետ պայմանները։

Չինաստանի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ճանապարհին առաջին քայլը հանդիսացավ աշխատանքային փոխօգնության խմբերի ստեղծումը գյուղում։ Գյուղացիների այդ ամենապարզ ձևի միավորումները իրենց մեջ կրում են սոցիալիզմի միայն որոշ ծիլերը։ Խմբերի անդամները փոխադարձաբար օգնում են միմյանց



աշխատող ձեռքերով, քարշող ուժով, գյուղատնտեսական գործիքներով, բայց առաջվա նման յուրաքանչյուրն իր հողը մշակում է առանձին։ Այդ միավորումները 1954 թվականին ընդգրկում էին Չինաստանի բոլոր գյուղացիական տնտեսությունների գրեթե կեսը։

Հետագա առաջընթաց քայլը գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների կազմակերպումն է, որոնք ստեղծվում են աշխատանքային փոխօգնության խմբերի հիման վրա՝ փոքր չափերով։ Այդ կոոպերատիվների առանձնահատկությունն այն է, որ՝ փայատիրական հիմունքներով միավորվում է հողը և տնտեսությունը վարվում միասնական, կոլեկտիվ ձևով։ Այդ կոոպերատիվները դեռևս կիսասոցիալիստական բնույթ են կրում, քանի որ հողը առաջվա նման կազմում է կոոպերատիվի անդամ գյուղացիների մասնավոր սեփականությունը։ Եկամուտների բաշխումը կոոպերատիվների անդամների միջև կատարվում է ոչ միայն ըստ աշխօրերի, այլև այն բանին համապատասխան, թե այս կամ այն գյուղացին, որպես փայ, ինչ հող և արտադրական ինչ միջոցներ է մտցրել կոոպերատիվ։ Տնտեսությունը այդպիսի կոոպերատիվներում վարվում է ար-

ղեն կոլեկտիվ աշխատանքի հիմունքներով. այնտեղ երևան է գալիս հասարակական ֆոնդ ստեղծելու և այն ամրապնդելու հնարավորություն, մի բան, որով կոոպերատիվները տարբերվում են սովորական մասնավոր տնտեսություններից։

Սոցիալիզմի ճանապարհին չինական գյուղի կատարած երրորդ քայլը՝ կիսասոցիալիստական տիպի մանր կոոպերատիվների հիման վրա խոշոր գյուղատնտեսական կոոպերատիվների կազմակերպումն է, կոոպերատիվներ, որոնք լրիվին սոցիալիստական բնույթ են կրում։ Այդպիսի միավորումներում արտադրական միջոցները ամբողջովին հանրայնացված են և տիրապետում են աշխատանքի սոցիալիստական կազմակերպման և եկամուտների սոցիալիստական բաշխման սկզբունքները։

Չինական գյուղի սոցիալիստական վերակառուցման յուրահատկությունն այն է, որ վերակառուցումը տեղի է ունենում ոչ թե ինդուստրացման բազայի վրա, այլ նրան համընթաց։ Գյուղատնտեսության կոոպերացումը պայմաններ է նախապատրաստում նրա մեքենայացման համար։ «Մեր երկրի պայմաններում,— նշել է ընկեր Մաո Ցզե-դունը,—... նախ անհրաժեշտ է կոոպերաց-



նել գյուղատնտեսությունը,— միայն այն ժամանակ հնարավոր կդառնա խոշոր տեխնիկայի կիրառումը»։

Չինական գյուղում կոոպերացման շարժումը ժողովրդական իշխանության տարիներին ծավալվեց աճող տեմպերով։ 1951 թվականի վերջերին երկրում կային 300 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։ 1954 թվականին կոոպերատիվների թիվը աճեց և հասավ 100 հազարի։ 1955 թվականի հունիսին Չինաստանում կային 650 հազար կոոպերատիվներ։ Կոոպերատիվ շարժման հաջողությունը բացատրվում է նրանով, որ կոոպերատիվները պրակտիկայում ապացուցեցին անհատական տնտեսությունների համեմատությամբ իրենց ունեցած առավելությունները։ Բավական է ասել, որ արդեն այժմ երկրի կոոպերատիվների ընդհանուր թվի չորս հինգերորդականը 10—30 տոկոսով բարձրացրել է բերքատվությունը։

Չինական գյուղում կոոպերատիվ շարժման հետագա զարգացման գործում կարևորագույն դեր են խաղում Չինաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի 1955 թվականի հոկտեմբերին տեղի ունեցած վեցերորդ պլենումի որոշումը և ընկեր Մաո Ցզե-

դունի ղեկուցումը գյուղատնտեսության կոոպերացման հարցի մասին։

Չինաստանի Կոմունիստական պարտիայի կենտկոմը իր որոշման մեջ նշեց, որ գյուղատնտեսության կոոպերացման զարգացման հնարավորությունը պայմանավորված է, ամենից առաջ, նրանով, որ երկրում արդեն ստեղծված է ժողովրդի դեմոկրատական դիկտատուրա՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ և նա իրագործում է սոցիալիստական շինարարությունը։ Այդ հնարավորությունը պայմանավորված է նաև նրանով, որ գյուղացիների մեծամասնությունը, ցանկանալով ազատվել շահագործումից և աղքատությունից, ձգտում է թևակոխել սոցիալիզմի ուղին։

Չինաստանի կոմունիստական պարտիայի կենտրոնական կոմիտեն սուր քննադատության ենթարկեց այն պարտիական աշխատողների սխալ հայացքները, որոնք հանդես էին գալիս գյուղացիության կոոպերացման դանդաղ տեմպերի օգտին։ Այդ աշխատողները գտնում էին, թե կարելի է սահմանափակվել կալվածատիրական հողերի բաժանումով և դրանից առաջ չգնալ։ Նրանց կարծիքով՝ կոոպերատիվ շարժումը չինական գյուղում արդեն «գերազանցում է ռեալ հնարավորու-



թյուններին» և «առաջ է անցել մասսաների գիտակցականության մակարդակից»։ Ելնելով գյուղում տիրող դրության այդ սխալ գնահատականից, որոշ պարտիական աշխատողներ «կոոպերատիվների քանակը վճռականորեն կրճատելու» կուրս էին վերցրել և, գործելով վարչարարական մեթոդներով, ցրել մեծ քանակությամբ կոոպերատիվներ։ Փաստորեն այդպիսի հայացքներ ունեցող մարդիկ կատարում էին բուրժուազիայի և գյուղի կապիտալիստական ուժերի կամքը։

Դատապարտելով այդ հայացքները, որպես արմատապես սխալ հայացքներ, ընկեր Մաո Ցզե-դունը հայտարարեց. «Մենք պետք է համոզված լինենք այն բանում, որ՝ 1) գյուղացիների լայն մասսաները ցանկանում են պարտիայի ղեկավարությամբ աստիճանաբար ընթանալ սոցիալիստական ուղիով. 2) պարտիան ընդունակ է գյուղացիներին առաջնորդելու սոցիալիզմի ուղիով։ Գործի էությունը և գլխավոր կողմը այդ երկու դրույթն են։ Եթե չլինի այդ վստահությունը, ապա մենք չենք կարողանա մոտավորապես երեք հնգամյակում հիմնականում կառուցել սոցիալիզմը»։

## Աշխատավոր գյուղացիությունը կողմնակից է կոմունիստական պարտիայի գծին

Գյուղի կոոպերացման մասսայական շարժման այն բուռն վերելքը, որ սկսվեց ՉԿՊ կենտկոմի 6-րդ պլենումի որոշումների հրապարակումից անմիջապես հետո, կործանիչ հարված հասցրեց աջ-օպորտունիստական հայացքներ կրողներին և կրկին անգամ հաստատեց պարտիայի նշած կուրսի ճըշտությունը։ Ներկայումս Չինաստանում հաշվվում է մոտ 1 միլիոն 400 հազար գյուղատնտեսական կոոպերատիվ։ Նրանք միավորում են 50 միլիոն գյուղացիական տնտեսություն, որը կազմում է երկրի բոլոր գյուղացիական տնտեսությունների ավելի քան 40 տոկոսը։ Կոոպերատիվ մտնելու մեծ ցանկություն է նկատվում հատկապես չքավորների և միջակների ստորին խավերի մեջ։ Չինաստանի շատ նահանգներում բոլոր գյուղացիների արդեն կեսից ավելին արտադրական կոոպերատիվների մեջ է մտել։

Չինաստանի կոմունիստական պարտիան անշեղորեն կիրառում է կամավորության սկզբունքը գյուղատնտեսական կոոպերատիվներ ստեղծելիս։ Պարտիան ելնում է այն բանից, որ կոոպերատիվները մարդկանց դեպի իրենց պետք է գրավեն համոզման ու-



ժով, օրինակի ուժով։ Ահա այդ դրույթը հաստատող բազմաթիվ փաստերից մեկը։ Ցզյանսի նահանգի Ուսունի վոլոստում արտադրական կոոպերատիվ կազմակերպվեց փոխօգնության երկու խմբերի միացման ճանապարհով։ Կոոպերատիվն ստեղծելիս նրա մեջ մտան 15 չքավոր տնտեսություններ, մնացած միջակ և չքավոր տնտեսությունները հրաժարվեցին կոոպերատիվի մեջ մտնել։ Բայց մեկ տարուց հետո կոոպերատիվի անդամների թիվը կրկնապատկվեց։ Իսկ ինչո՞վ վաստակեց կոոպերատիվը գյուղացիների վստահությունը։ Ամենից առաջ նրանով, որ կոոպերատիվում բերքը շատ ավելի բարձր էր, քան այն տնտեսություններում, որոնք չէին ցանկանում կոոպերատիվ մտնել, բացի դրանից, կոոպերատիվներում յուրաքանչյուր մուի[1]) վրա մեկ և կես անգամ քիչ նյութական միջոցներ ծախսվեցին, քան անհատական տնտեսություններում։ Մեկ տարվա ընթացքում 40 տոկոսով աճեցին կոոպերատիվի զուտ եկամուտները։ Եկամուտների այդպիսի արագ աճը չափազանց համոզիչ փաստարկ եղավ գյուղացիների համար, որպեսզի նրանք մտնեն կոոպերատիվի մեջ։

*) Մեկ մուն հավասար է $^1/_{15}$ հեկտարի։

Գյուղի սոցիալիստական վերակառուցման ասպարեզում Չինաստանի կոմունիստական պարտիայի գիծն է՝ հենվել չքավորների և միջակների ստորին խավերի վրա, ամուր դաշինք կնքել միջակի հետ։ «Միջակները,— նշված է ՉԿՊ Կենտկոմի 6-րդ պլենումի որոշման մեջ,— բանվոր դասակարգի և չքավորների մշտական դաշնակիցներն են, ուստի պետք է կարողանալ յոլա գնալ նրանց հետ՝ թե կոոպերատիվներում և թե նրանցից դուրս»։

Կուլակներին և նախկին կալվածատերերին, որպես կանոն, չի թույլատրվում մասնակցություն ունենալ կոոպերատիվներին։ Կուլակների նկատմամբ տարվում է սահմանափակման և աստիճանաբար դուրս մղման քաղաքականություն։

Չինաստանում գյուղատնտեսության կոոպերացմանը ուղեկցում է դասակարգային պայքարի սրումը գյուղում։ «Կոոպերացման շարժման զարգացմանը համընթաց,— նշված է ՉԿՊ կենտկոմի 6-րդ պլենումի որոշման մեջ,— կալվածատերերից, կուլակներից և զանազան կոնտրռևոլյուցիոն տարրերից շատերը անխուսափելիորեն զանազան ձևերով քայքայիչ աշխատանք են տանելու։ Մենք պետք է զգաստություն ցուցաբերենք,



գիտակցելով կոոպերատիվ շարժման դեմ ուղղված քայքայիչ գործունեության ամբողջ լրջությունը»։

Աշխատավոր գյուղացիության թշնամիները ոչ մի բանից չեն խորշում՝ չինական գյուղի սոցիալիստական վերակառուցմանը խանգարելու համար։ Նրանք պրովոկացիոն և զրպարտիչ լուրեր են տարածում, ոչնչացնում են անասունները, կազմակերպում են հասարակական գույքի հրդեհումներ և մասսայական փչացումներ, փորձեր են անում խցկվել կոոպերատիվները՝ դրանք ներսից քայքայելու համար, կազմակերպում են գյուղական կոմունիստների, ակտիվիստների սպանություններ։ Թշնամիները փորձում են գժտություն և թշնամություն սերմանել չքավորների և միջակների միջև։ Հաճախ կուլակները և նախկին կալվածատերերը փորձում են ստեղծել կեղծ կոոպերատիվներ, որտեղ «կոլեկտիվ աշխատանքի» քողի տակ փաստորեն շահագործվում են չքավորները։

Չինաստանի աշխատավոր գյուղացիությունը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վճռական հակահարված է տալիս գյուղի կոոպերատիվ շարժման թշնամիների բոլոր ոտնձգություններին։ Նա ջերմորեն պաշտպանում է պարտիայի գիծը

գյուղատնտեսության կոոպերացման ասպարեզում։

## Պարտիայի ղեկավարությունը հաղթանակի երաշխիքն է

Գյուղացիության մեջ կոոպերատիվ շարժումը ծավալելու կուրս վերցնելով, Չինաստանի կոմունիստական պարտիան հսկայական նշանակություն է տալիս արտադրական նոր կոոպերատիվների ստեղծման նախապատրաստական քաղաքական և կազմակերպական աշխատանքին, ինչպես նաև գոյություն ունեցող կոոպերատիվների կազմակերպական-տնտեսական ամրապնդմանը։ Պարտիան անդուլ կերպով հիշեցնում է, որ չինական գյուղի կոոպերատիվ շարժման հետագա աճը կախված է այդ ամբողջ աշխատանքի հաջողություններից։ Կոմունիստական պարտիան քաղաքներից գյուղ է ուղարկել բազմահազար կոմունիստներ, պարտավորեցնելով նրանց, օգնելու տեղական գյուղական կադրերին՝ արտադրական նոր կոոպերատիվների ստեղծման և գոյություն ունեցող կոոպերատիվների ամրապնդման աշխատանքում։

Չինական գյուղում կոոպերատիվ շարժման հետագա զարգացման համար կարևոր



նշանակություն ունի «Գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվի օրինակելի կանոնադրության» նախագիծը, որին հավանություն են տվել և համաժողովրդական քննության հանձնել պարտիան ու կառավարությունը։ Այդ նախագիծը սահմանում է գյուղատնտեսական կոոպերատիվների կազմակերպման հիմնական սկզբունքները, ինչպես նաև կոոպերատիվների անդամների իրավունքներն ու պարտականությունները։ Նրանում մանրամասնորեն քննության են առնված կոոպերատիվի անդամների աշխատանքի վարձատրության, կազմակերպման և հաշվառման հարցերը, ինչպես նաև կոոպերատիվի անդամների բանող անասունները և գյուղատնտեսական գործիքները կոոպերատիվում օգտագործելու համար դրանց տերերին վարձատրելու հարցերը։ Կանոնադրության նախագծում ընդգծված է, որ «գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվի եկամուտը ստեղծվում է կոոպերատիվի անդամների աշխատանքով, այլ ոչ թե հողի սեփականությամբ։ Այդ պատճառով էլ,— ասված է Կանոնադրության մեջ,— հողի համար ավելի պակաս վարձատրություն պետք է սահմանվի, քան աշխատանքի համար, որպեսզի աշխատանքային խան-

ղավառություն առաջանա կոոպերատիվի անդամների մեջ»։ Կանոնադրությունը սովորեցնում է ճիշտ զուգակցել կոոպերատիվի անդամների անձնական և հասարակական շահերը։

Ժողովրդական իշխանությունը ամեն տեսակ օգնություն է ցույց տալիս արտադրական կոոպերատիվներին։ Նրանց արտոնյալ պայմաններով երկարատև վարկ է տրամադրում կապիտալ շինարարություն կատարելու, գյուղատնտեսական մեքենաներ, սերմեր, քիմիական պարարտանյութեր ձեռք բերելու և այլ նպատակներով։ Հնգամյա պլանով նախատեսված է երկրում զարգացնել գյուղատնտեսական մեքենաշինությունը, այդ թվում՝ կազմակերպել տրակտորների արտադրություն։ Գյուղական շրջաններում ստեղծվում են ագրոտեխնիկական կայաններ և կետեր, որոնք հանդիսանալու են գյուղատնտեսական կոոպերատիվներին գիտա-տեխնիկական և արտադրական օգնություն ցույց տվող կենտրոններ։

Չինական բազմամիլիոն գյուղացիությունը սոցիալիզմի ուղին փոխադրելը կապված է մի շարք լուրջ դժվարությունների հետ։ Բայց պատմական այդ մեծ գործի ղեկավար ու կազմակերպիչ Չինաստանի կոմունիստա-



կան պարտիան վստահ է, որ ինքը հաջողությամբ գլուխ կբերի այն։ «Սոցիալիստական ինդուստրացումը և սոցիալիստական վերակառուցումը,— ասում է ընկեր Մաո Ցզե-դունը,— իհարկե, հեշտ բան չեն։ Մոտավորապես 110 միլիոն չինական գյուղացիական տնտեսություններն անհատականից կոլեկտիվ տնտեսության վերափոխելը, գյուղատնտեսության մեջ տեխնիկական վերափոխություններ մտցնելը և այդ գործի ավարտումը՝ արդարև մեծ դժվարությունների հետ են կապված։ Սակայն մենք պետք է հավատացած լինենք այն բանում, որ մեր պարտիան ի վիճակի է առաջնորդել մասսաներին այդ դժվարությունների հաղթահարման համար»։

Չին գյուղացիությունը առօրյա կյանքի փաստերով համոզվում է, որ կոմունիստական պարտիայի գաղափարները ճշմարիտ են և իմաստուն։ «Ընթացի՛ր պարտիայի նըշած ուղիով, և դու չես սխալվի» այս են զգում, այս են ասում Չինաստանի միլիոնավոր գյուղական աշխատավորներն այսօր։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումը՝ *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին, ընկեր Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին: *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը, *«Պրավդայի»-ի 1955 թվականի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի հուլիսի 19-ի համարում։*

Աշխատանքային նոր հաջողություններով դեպի



ՍՄԿՊ 20-րդ համագումարը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 25-ի համարում։*

Աշխատանքային նոր նվաճումներով ենք դիմավորում ՍՄԿՊ 20-րդ համագումարը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ 1956 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Զորրորդ սեսիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 27-ի համարում։*

ՕՐԵՆՔ՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության *1956 թվականի պետական բյուջեի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 29-ի համարում։*

Խաղաղ շինարարության բյուջեն, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 29-ի առաջնորդողը։*

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան կատարած ուղևորության մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Զորրորդ սեսիա-*

*յում, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Չորրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 31-ի համարում։*

Նշանավոր ավանդ խաղաղության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամրապնդման գործում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

## 4. ԼԱՅՆՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Արդյունաբերության աշխատողների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 22-ի համարում։*

Ինժեները տեխնիկական պրոգրեսի համար ակտիվ մարտնչող է, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 27-ի առաջնորդողը։*



## 5. ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԵՎ ՊԱՅՔԱՐԵՆՔ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումը՝ *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը։ *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1955 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Ապահովել բոլոր ձեռնարկությունների բարձր եկամտաբերությունը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը տպագրված 1955 թվականի դեկտեմբերի 13-ի համարում։*

## 6. ԳԵՐԱԶԱՆՑ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹՅԱՄԲ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ գյուղատնտեսության

նետագա զարգացման միջոցառումների մասին։ *Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953։*

Գյուղատնտեսության մասնագետը կոլտնտեսային արտադրության կազմակերպիչն է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։*

Այժմվանից նախապատրաստվել գարնանացանին, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված դեկտեմբերի 18-ի համարում։*

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի № 12-ում, էջ 59։*

## 7. ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի նետագա բարելավման միջոցառումների մասին։ *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը, Հայպետհրատ, 1953, էջ 126—136։*

ՄՏԿ-ների աշխատողների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների Դիմումը Սովետական Միության մեքենա-տրակտորային կայանների բոլոր բանվորներին, մասնագետներին և ծառայողներին,



*տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունվարի 30-ի համարում։*

*Վորոնեժի մարզի տրակտորիստների, տրակտորային բրիգադների բրիգադիրների, մեքենա-տրակտորային կայանների ու սովխոզների նորոգման բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների* Դիմումը Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր մեխանիզատորներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

## 8. ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ ԷԼ ԱՎԵԼԻ ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԽՆԱՄՔԸ

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին։ *Զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին։*

Լիովին օգտագործել կաթի արտադրության ավելացման ռեզերվները, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 25-ի առաջնորդողը։*

Սոցիալիստական պարտավորություններ, *ընդունված առաջավոր կթվորների ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցների կողմից, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի դեկտեմբերի 25-ի համարում։*

*Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի № 12-ում, էջ 60։*

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

**Խոր սնուցումն ու ջրումը—** *Արտադրական մեծ նշանակություն է ստացել ինժեներ Գ. Շենդրիկովի (Համ. Գյուղ. ցուցահանդեսից) և պրոֆեսոր Ն. Խոլինի (Մոսկվայի ինժեներա-շինարարական ինստիտուտից) առաջարկած մեթոդը, որով նրանք հող քանդող հատուկ խողովակների օգնությամբ խոնավություն և սնունդ են մտցնում ցանկացած խորության վրա գտնվող բույսերի արմատների տակ։ Այդ հող քանդող խողովակները կարող են աշխատացնել «ԶԻՍ» տիպի ջրցան ավտոմեքենաները։ Խորարմատային ռոռգման ու սնուցման այս ձևը հնարավորություն է տալիս ստանալու բարձր բերք, անկախ բնական տարերքներից՝ երաշտից ու հողմահարությունից։*

**Գյուղական հիդրոգեներատորներ—** *Գյուղական հիդրոէլեկտրակայանների համար «Ուրալէլեկտրաապարատ» գործարանը արտադրում է «ՎԳՍՊ—219» մարկայի ուղղահայաց հիդրոգեներատորներ։ Այդ սերիայի մեջ մտնում են 25 տեսակի մեքենաներ՝ 200—1000 կիլովատ հզորությամբ և րոպեյում 187—428 պտույտով։ Տարբեր տեսակի գեներատորների համար պահանջվում է նաև տարբեր պտտաթև տուրբին։ Այդպիսի տուրբինները դրվում են հաճախակի փոփոխական ճնշում ունեցող ոչ մեծ գետերի վրա։*



**Ամաններ լվացող մեքենա—** *Այս մեքենան մեկ ժամում հազարավոր ափսեներ է լվանում, մաքրում և չորացնում։ Նրա կենտրոնում գտնվում է լվացման կամերան։ Փայտե արկղների վրա դրված ամանները լվացման բաժինն են անցնում ավտոմատ փոխադրիչով։ Մեքենան բաղկացած է իրանից, բեռնվող և բեռնաթափվող սեղաններից, ջրատաքացման բաժնից և ամանների համար փայտից պատրաստած կոմպլեկտից։ Ջրի տաքացումը կարող է կատարվել էլեկտրական հոսանքի միացման, գազի և շոգու միջոցով։*

*Մեքենայի երկարությունը, սեղանի հետ միասին, 3 մետր 80 սանտիմետր է, լայնությունը՝ 57 սանտիմետր և բարձրությունը՝ մեկ մետր 45 սանտիմետր։*

**Ցերեկային լույս՝ առանց արևի—** *Սովետական գիտնականներին հաջողվել է ստեղծել ցերեկային լույս տվող լամպեր։ Այդ լամպերը լուսավորում են սենյակները, գործարանների ցեխերը, թանգարաններն ու դահլիճները, գետնախոր հանքերն ու թունելները։ Այդ լամպերի արագ տարածումն ու լայն գործադրությունը ամենից առաջ բացատրվում է մի շարք հանգամանքներով։ Սովորական էլեկտրական լամպին հակառակ, լյումինեսցենտային լամպը ավելի քիչ էներգիայի ծախսումով 2—3 անգամ ավելի ուժեղ և բնական լույս է արձակում և օգտագործման տեսակետից ավելի երկարավետ է։ Լյումինեսցենտային լամպերը հնա-*

րավորություն են տալիս գիշեր ժամանակ գույները տեսնել նույն բնականությամբ, ինչպես ցերեկվա լույսի պայմաններում։ Այդ պատճառով էլ այդ լամպերը հատկապես օգտագործվում են այնտեղ, որտեղ մարդիկ գործ ունեն ներկերի հետ՝ տեքստիլ ֆաբրիկաների ներկող ցեխերում, տպարաններում, պատկերասրահներում և մյուս տեղերում։

**Հաշվիչ նոր մեքենա**— Լենինգրադի «Հիդրոէներգոպրոեկտ» ինստիտուտում օգտագործվում է ընդհանրական հաշվիչ սեղան։ Հաշվիչ սեղանի տարեկան աշխատանքի արդյունքները ցույց են տվել, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է շատ-շատ անգամ։ Այսպես, օրինակ, սխեմաները վերակազմելու և մեկ էներգոսիստեմի կարճ միացման հոսանքի հոսանքաբաշխիչը որոշելու համար եթե առաջներում պահանջվում էր 15 աշխատանքային օր, այդ հաշիվները հաշվիչ սեղանի օգնությամբ կատարվում է ընդամենը 1,5 աշխատանքային օրում։ Էլեկտրական ընդհանրական հաշվիչ սեղանը կարող է հաջողությամբ օգտագործվել նախագծվող և շահագործման հանձնված ժամանակակից բոլոր էլեկտրականությամբ աշխատող օբյեկտներում, որտեղ պահանջվում է լուծել հսկայական բարդ թվերի հաշիվներ։

---

## СОДЕРЖАНИЕ




Ի. տ. խմբագիր՝ Վ. ԷՆԳԻԲԱՐՅԱՆ




# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ լույս են տեսել.

Հրաչյա Աճառյան.— *«Լիակատար քերականություն հայոց լեզվի»։ Գիրքը բաղկացած է երկու մասից. 1. Լեզվաքննության ներածություն, 2. Դերանունների դասակարգումը։ 657 էջ, գինը 23 ռ. 50 կ., տիրաժ 3.000։*

Վ. Պետրոսյան.— *«Կոլտնտեսությունների դրամական եկամուտները և դրանց ավելացման ուղիները»։ 52 էջ, գինը 60 կ., տիրաժ 1.500։*

Հայպետհրատի հրատարակությամբ լույս է տեսել.

Րաֆֆի (Հակոբ Մելիք-Հակոբյան).— *Երկերի ժողովածու։ Երկրորդ հատոր։ Հատորում զետեղված են «Ջահրումար», «Մինը այսպես, մյուսը այնպես», «Խաչագողի հիշատակարանը» վեպերը։ 656 էջ, գինը 11 ռ., տիրաժ 25.000։*


Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 1 1956 г.

*ՎՖ 00562 Պատվեր 26 Տիրաժ 8360*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*